ԱՐՏԱՇԷՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

# ԵՐԿՈՒՆՔ



ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ
Վ. եւ Հ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ
Կ. ՊՈԼԻՍ

1906

# ԸՆԹԵՐՑՈՂԻՆ

Բանաստեղծութեանց այս պզտիկ հատորը՝ մանաւոր ծրագրի մը համաձայն պատրաստուած երկասիրութիւն մը չէ։ Ասիկա փունջ մըն է, կազմուած մեծագոյն մասով այն քերթուածներու՝ որ Լ.... Թ....ին հրատարակութենէն առաջ ու ետքը լոյս տեսած են զանազան պարբերականներու մէջ։ Ընդհանրապէս դեռ երէկ միայն գրուած բանաստեղծութիւններ չեն անոնք։ Անոնց մէջ կան որ տասնեակ մը տարիէ ի վեր կեանք ունին արդէն։ Զանոնք այսօր հատորի մը վերածելու համար վերստին ձեռք առած պահուս, կարգ մը պզտիկ վերհպումներ անհրաժեշտ տեսնուած են, ո՛չ այնքան խորքին մտահոգութեամբ, որքան ձեւին խղճմտութիւնով։ Հարկ չկար անոնց բնատիպ երանգը եղծանելու կամ խճողելու։ Այդ բանաստեղծութիւնները՝ հոգեկան բացառիկ վայրկեաններու անկեղծ արձանագրութիւններ են, ու նուիրական անոր համար՝ որ ծնունդ տուաւ անոնց։ Թերեւս հիմա շատ ինչ փոխուած է մէջս, անոնցմէ բաւական ինչ օտար կը թուի հոգւոյս։ Բայց այսօր առաւել քան երբէք խանդաղատանքս գիտակցութեամբ ու տրտմագին պաշտամունքով օծուած է երազուէս արբեցութեանց այդ երջանիկ՝ այլ անդարձ խորհուրդներուն յիշատակին։ Ամէնէն ցուրտ մարդը կը սիրէ

իր հոգիին պատմութիւնը թղթատել, կրօնքով խըն-կուած ու պատկառանքով քաղցրացած հետաքրքրու-թեամբ մը, ու չկայ թերեւս աւելի եղերականօրէն շահագրգիռ բան՝ քան միսթիկ պատմութիւնը հոգիի մը ճամբորդութեան, այս ունայն աշխարհին տխուր հորիզոնին վրայէն:

Երգ Երգոցը տրամաբանական կապ մըն է Հին Կտակարանին ու Նոր Կտակարանին միջեւ: Հոգիիս շրջանա-ռութիւններուն հանգրուաններէն մին կը յատկանշէ անիկա:

Այս ծփուն անհաստատութեան առերեւոյթ հա-կասութիւններուն մէջ՝ երբեք չեմ փնտռեր ընթեր-ցող հասարակութեան մը գթոտ ներողամտութիւննե-րուն ապաստանիլ: Այդ մտահոգութիւնը կը թողում դպրոցական դասագրքեր պատրաստող խոժոռադէմ պատուելիներու: Բանաստեղծութեանց հատորի մը հրատարակումը՝ հասարակ ձեւով ըմբռնուած օգ-տակարութեան մը տխուր ու նուաստացուցիչ կո-չումէն հեռու է: Միայն թէ, մարդ իր հոգիին հա-ղորդականութիւնը կը փորձէ: Երջանիկ է, երբ սի-րոյ ժապաւէններ, համակրութեան երիզներ լծոր-դած են զինքը իր շուրջը գտնուող հոգիներուն հետ: Ապա թէ ո՛չ՝ կուլայ իր աննշանութեան վրայ: Ահա՛ միակ փառքը, — ունա՛յն փառք, — երազամոլ աշուղին:

ԱՐՏԱՇԷՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

[illegible]
13 Յ[illegible] 1904



# ԵՐԿՈՒՆՔ

## ԶԱՆՁՐՈՅԹ



*ԺՆԻԿ ձանձրոյթն ինքնաբոյս՝*
*Կը ծակծըկէ սիրտս անդուլ.*
*Կրակէ վէրքեն այդ անխուլ՝*
*Իմ կեանքս է որ կուտայ խոյս:*

*Կ'իյնան թըռիչքն իմ հոգւոյս*
*Իր ցանցերուն մէջ ամուլ.*
*Դժնիկ ձանձրոյթն ինքնաբոյս՝*
*Կը ծակծըկէ սիրտս անդուլ:*

*Եւ փուշերում մէջ անլոյս*
*Բիւր ըղձանքներն իմ խարխուլ*
*Կը բըզըկտին ա՜լ անյոյս,*
*Մինչ կ'ուռճանայ համր ու խուլ՝*
*Դժնիկ ձանձրոյթն ինքնաբոյս :*

1893



## ՆԱՅՈՒԱԾՔԸ

ԱՂՋԸԿԱՆ մը ծաղկատի
Խոր նայուածքը բոցավառ
Ունի ցոլքեր հըրատի՝
Խորհրդաւոր, անըսպառ ։

Եւ եթէ մերթ ինձ յառին
Զոյգ մը յանդուգն եփենոս՝
Կ'զգամ անոնց սարսուռին
Ցուրտ սողոսկումն յամրահոս ։

Ու վակժուժել չեմ կրնար
Այդ սեւ շողանքն անձկագին,
Ուր կը յուզուի տենդահար
Սիրաքաղախ իր հոգին ։

*Քանզի անոնց այդ յամառ*
*Սեւեռումներն երազուն՝*
*Կ'զգամ թէ միշտ ինձ համար*
*Ունին խըռովք մ'անանուն ։*

*Ու վրդոված՝ խոյս կուտամ*
*Այդ անքըթիթ նայուածքէն.*
*Ուր անհանգիստ ու տարտամ*
*Յանկութիւններ կ'ակնարկեն ։*

1895





## ՍՐԲԱՊՂԾՈՒԹԻՒՆ



*ՈԳԻՍ շատ լըռւին ու թաքուն խորշեր*
*Ունի, որոնց խորն՝ անթափանց՝ մըթին՝*
*Միսթիկ երազմութեան ծիլեր կը փթթին,*
*Ուր արեւ չը կայ, այլ՝ սեփ սեւ գիշեր ։*

*Հոն կ'ուրուագըծուին տարտամ պատկերներ,*
*Հոն է Աստուծոյ իմ դժնէ բագին,*
*Եւ անոնց առջեւ բուրվառն իմ կեանքին*
*Կը ծըխէ անդուլ խունկ հոգենըւէր ։*

*Մատնացումի մ'է սիրտս մատունքով լեցուն․*
*Բանալ խորհուրդներն իր սեւ խորշերուն,*
*Քօղազերծ ընել ծալքերն անոր մութ,*

*Խորտակել ցըփիլկն այն նըւիրակըն...*
*Չէ՛, ես չեմ ժըտեր սրբապղծութեան*
*Այս խօլ, անխորհուրդ արարքին անգութ ։*

1895





## ՀՐԱԺԱՐՈՒՄ



ՅԱՒԻՏԵԱ՛Ն քեզ մոռնալու
Տըխուր հարկէն՝ ես եղայ
Կամակորոյս եւ հըլու
Իր անձնուրաց աբեղայ:

Ու խստամբեր այդ կեանքին
Զրկանքներուն անմըռունչ
Ես ուզեցի տրտմագին
Համակերպիլ լուռ ու մունջ:

Ի՛նչ փոյթ նոյն իսկ թէ ծանր էր
Ներանձնացումն այդ բոլոր:
— Վանականը չի՞ գիտեր
Թէ ո՛ւր կ'երթայ անմոլոր:

Եւ սկիհի սուրբ գինին
Եղաւ արցունքս անապակ.
Փոխան կակուղ նշխարքին՝
Սրտիկս ըրի պատարագ:

*Խոցոտ կամքիս ճիգերով*
*Շատ բան մոռցայ եւ յուշիկ,*
*Մեղմ ակնարկիդ ջերմ գորով*
*Ու բիւր կերպերդ անուշիկ:*

*Դէմքէդ շքեղ ու փարթամ*
*Այսօր ունիմ ես, աւա՜ղ,*
*Լոկ դիմաստուեր մը տարտամ,*
*Անճիշդ, պղտոր ու նըւաղ:*

*Գուցէ օր մ՚այլ ջանքերու*
*Աշխատութիւնն ու ճըգնունք,*
*Լոկ մի անգոյ համբարու*
*Քեզմէ թողուն ինձ մասունք:*

*Այլ ի՞նչ ըրիր՝ որ իմ մէջ,*
*Հոգւոյս խորը դեռ մի բան*
*Կը մընայ ջերմ ու անշէջ,*
*Անվըտար ու անխափան:*

1895





## ՆՈՒԷՐ

ՈՒԻՐԵՑ ինծի շուշանը ներման
Զոր ակռաներով խածած էր հուրին,
Ներշընչելով շունչն իր մարմնի բոյրին
Այդ ծաղիկին մէջ՝ ցօղաւէտ համակ :

Ու փընտըռեցի անձկութեամբ մը տաք,
Ջլացիչ յոյզովն հոգւոյ սարսուռին,
Թուրմունններն ամէն՝ որ հոն կը թառին,
Փափուկ թերթերուն ագուցուածքին տակ :

Ու փեթըռտելով թերթերը բոլոր՝
Ես հոն չը գըտայ երազ մ'իրական.
Շուշանէն մընաց՝ լոկ ծըղօտը չոր . . . :

Քմահաճ բաղդն էր հուրին այդ գարնան,
Շուշանն ալ ճերմակ ու բուրումնաւէտ՝
Մեր սին յոյսերուն ծաղիկը նման:

1896





## ՎԵՐՋԱԼՈՒՍԱՅԻՆ



*Երիկուն մը՝ աշնան տըխուր.*
*Գիւղէն հեռու՝ բլրին վըրայ։*
*Ամպերուն տակ ոսկեփրփուր*

*Անուշ հով մը կը սարսըռայ.*
*Մինչ կը դեղնի արեւն հասած,*
*— Մութ գիշերին՝ լոյս-ռահվիրայ։*

*Դաշտերուն մէջ համասարած*
*Հողագործներ դեռ կը հերկեն*
*Լայն փորն երկրին կակուղ ու թաց։*

*Աղօտ ցոլքեր գորշ երկինքէն*
*Կը ցանցնուին դաշտերուն մէջ*
*Ու մշուշը կը ծակծկեն։*

*Եւ կեանքի մը պէս վաղաշէջ,*
*Կը մարմըրի արեւն հասած,*
*Լոյս-հոգիովն իր կենսատենչ։*

Ու շըղարշներ, ցուրտ, սարսռուն,
Կը հագցընեն սեւեր երկրին,
Սուգի սեւերն ստուերներուն ։

Մինչ պատկերներն ալ կը մարին
Երազներու պէս մշուշոտ,
Այս ոսկեզօծ ոգեւարին
Հուսկ ցոլքերուն տակ նըւաղկոտ ։





## ԱՄՊԵՐՈՒՆ



Ամպե՛ր, սեւ ամպեր, հէ՜յ, ո՞ւր կը թըռչիք,
Սահելով այդպէս կապոյտին ծոցէն,
Ու ձեր մթաստուեր հոգիներն անճիգ
Անհունին մէջ դէպ ո՞ւր կը թեւածեն ։

Ամպե՛ր, խորհուրդով լեցուն սեւ ամպեր,
Հսկայազանգուած, վիթխարի ու սէգ,
Արհամարհելով ստուերն ու գիշեր,
Մոլեգնոտ վազքով ո՞ւր, ինծի ըսէք ։

Ա՜, ես չեմ կարող թռչիլ ձեզի պէս,
Ինկած սանձարձակ հովերուն առջեւ,
Ու երթալ այնտեղ՝ ուր իմ սըրտիկէս
Թանկագին մաս մը խոյս տուաւ թեթեւ ։

Ամպե՛ր, թէ անոր երկիրն ալ երթաք,
Համբոյրէս կըրակ մ'ու բոց մ'աչքերէս,
Կուրծքիս խորերէն հեծեծանք մը տաք,
Ու կայծ մ'ալ առէ՛ք, տարէ՛ք իմ սէրէս ։

Աչքերուս ցոլքէն՝ ձեր փայլակներուն
Բոցէ շապիկին մէջ ծըրարեցէք.
Եւ հառաչներէս՝ վանկ-մը-մոլորուն
Ձեր որոտումին ծոցին մէջ դըրէք ։

Կաթիլ մ'ալ արցունք՝ իմ արցունքներէն
Ձեր անձրեւներուն խառնեցէք, ամպե՛ր,
Ամէնքն ալ առէք ու տարէք իրեն,
Ինէ՝ իմ ցաւիս իբրեւ լըրաբեր ։

Բայց կ'երթան, անխօս, լուրջ ու անտարբեր,
Անոնք ամպերը սեւ ու տխրունակ,
Եւ ի զո՜ւր անոնց կ'ուղղեմ ես խօսքեր,
— Անյոյս սիրողի յիմար զառանցանք ։





## ԳԻՇԵՐԱՅԻՆ



Գիշեր : Լրճակի եզրը առանձին :
Ջուրերու պայծառ արծաթին վըրայ
Սիւքը հեւ ի հեւ մերթ կը սարսըռայ,
Ու լայն թրթռումներ վերը կը յածին :

Ու ծիր-կաթինի անքաւ լոյսերէն՝
Աստղեր կը նըժան անտառակին մէջ :
Ու ցոլ ցոլ, վէտ վէտ հրթիռներ անշէջ
Կապոյտ ջուրերուն վըրայ կը պարեն :

Սաղարթներուն տակ թեթեւ մը հուրի
Մարմանդին վըրայ կը սահի շուտ շուտ,
Ասուպ մը կ’իյնայ մեղմ ու վիժանուս,
Ու կապոյտին՝ մէջ պահ մը կ’երկարի :

Կը սահի արծաթ ջուրերուն մէջէն
Ամպի թափանցիկ պաստառ մը թեթեւ,
Ու սաղարթախիտ պուրակին ետեւ
Մեղմ հեծկլտուքներ մերթ կը մրմնջեն :

Ու փոսփորալոյս կայծոռիկներու
Բոյլ մը կ'ակօսէ մութն ստուերակուռ,
Ընդհատ երիզ մը նուրբ ու ոսկեհուռ,
Ինչպէս անկումը վերն՝ ասուպներու :

Գիշեր : Լըճակին եզրը միամինակ.
Այս փայլի, բոյլի, ստուերի պահուն,
Հոգւոյս տենդագին խօլ սըլացքներուն
Պահ մը նեղ կուգայ մեծ միջոցն համակ :

1895





## ՑԱՒՍ



Երբեմն անհուն ցաւ մը ըռին
Կը խոշտանգէ սիրտըս բոլոր,
Ցաւն՝ աննշան բանաստեղծին
Փառքի ճամբով՝ քայլամոլոր :

Զի թանկագի՛ն յատկութիւններ
Ինձմէ կուտան խոյս՝ օրէ օր,
Կ'անցնի կեանքըս ամուլ, անսէր,
Փո՛ւճ է, դարման չըկայ անոր :

Կը ցըրտանայ լանջքըս՝ անբաւ
Իր յուզմունքի հըրայրքներէն,
Ու կը ցամքի սիրտըս տակաւ.
Ռամիկ հոգեր 'զայն կը վարէն :

Ու հոգիս ալ կը մերկանայ
Իր թեւերն յոգնավաստակ.
Սէր կամ երազ ալ չունի՞ նա.
—Երազն է սին, սէրն՝ իմաստակ...:

Զգայամոլ իմ կիրքերէն՝
Ես կը դառնամ լուրջ, հասուն մարդ,
Դառնութեան ցուրտ բեւեռէն
Վերադարձող ճամբորդ հըպարտ:

Այլ ցաւն անհուն, ցաւն է խորին,
Որ կը փորէ սիրտս օրէ օր,
Ցաւն՝ սպառող բանաստեղծին.
Աւա՜ղ, դարման չկայ անոր:

1899





## ՎԱՅՐԿԵԱՆ ՄԸ



Ո՛չ սէր, ո՛չ կիրք, ո՛չ յոյզ մը տաք,
Ո՛չ հրճուանք մը, ո՛չ խոլ ցաւ,
Ո՛չ արցունք մը, ո՛չ մի փափաք,
Սիրտս է անհուն քարանձաւ։

Դէմքըս չունի յուզման մի գիծ,
Փայլն աչքերուս է պաղեր,
Հոգիս ամուլ ու անկսկիծ
Ա՛լ չունի Թափ ու Թեւեր։

Ու կը փտուիմ բազկիս վրայ՝
Խոր մեղկուԹեամբ տարուբեր.
Երկինքը չի՛նչ կը սարսըռայ
Գլխիս վերեւ անտարբեր։

Եւ ծուլուԹեամբ, կէսով ծալած
ՄուԹ նայուածքըս երազուն,
Կը Թափառիմ անըրջայած
Պահ մը խորն այն բարձրերուն։

*Ու սիրտ՝ ըսէք, — ինչո՞ւ անշարժ*
*Այս կապոյտին տակը չինչ,*
*Արդեօք սէ՞ր մը, վի՞շտ մը, երա՞զ.*
*— Չէ՛, ո՛վ գիտէ, ո՛հ, ոչի՛նչ։*

1899





## ԱՍՏՈՒԾՈՅ ԵՐԱԶՆԵՐԸ

Փայլուն լուսինն՝ Աստուծոյ
Վառ անուրջն է իրական,
—Ոսկի երազ ծորածոյ
Խորն անհունին վեհական ։

Եւ արեւներն ալ՝ փաղփուն՝
Իտէալներն իր շըքեղ,
Անհունին մէջ սեւեռուն,
Անջնջելի, մըշտագեղ ։

Հաստատութեան մէջ խաղաղ
Այդ վառ խոհերն ու անուրջ
Լուրթ կապոյտէն, վերն, առկախ,
Կը դառնան իր հոգւոյն շուրջ ։

Ու կը դիտենք մենք յաճախ
Զանոնք աչքով մ'անտարբեր,
Գլխին վերեւ մեր, խաղաղ,
Վեհ մտածմանց այդ ջահեր ։

*Արեւ, աստղեր, ո՜վ լուսին,*
*Հուր-մըտածմունք ծորածոյ,*
*Կա՛յծ մ'ալ զձեզ երգողին՝*
*Մեծ Երազէն Աստուծոյ։*





## ԴԺԳՈՀՈՒԹԻՒՆ



երկայ պահուն անձկագին
Դժգոհութեանց մէջ խըռով
Կ'ալեծըփի այս հոգին
Բազմապահանջ պէտքերով ։

Կեանքի դեռ շատ լուսաւոր
Ու խընդալից կողմերուն
Գիտակցութիւնն է բոլոր
Խըռովարարն իմ հոգւոյն ։

Ու զրկանքներն՝ հոգւոյս մէջ
Կը հրդեհեն բոցափայլ
Խուլ կիրքերուն կայծն անշէջ,
Սպառնալից ու մըռայլ ։

Ու նըրբուղին վարդաւէտ
Յոյսի շուշան քայլերուն
Դեռ կ'երկարի՛, — առ յաւէ՞տ —
Հորիզոնին խորին, հեռուն ։

*Եւ ապագան որ չի գար,*
*Մի՛շտ հեռուն է խուսափող,*
*Ձայն կը ծածկէ յամրաբար*
*Գեթսեմանի ցըրտին հով ։*

*Լոկ հրճուանքի խորշն հանդարտ*
*Հոն է՝ ուր դեռ կը փայլին*
*Շողշողանքով մը կախարդ*
*Յիշատակներն անցեալին ։*

1898





## ԱՌԱՋԻՆ ՍԷՐ



Պատանութեան է՛ն միամիտ օրերուն,
Այն տարին էր՝ երբ երազոտ, հէգ տղեկ,
Հոգիս անծիր բաղձանքներու թեւերուն,
Տըժգոյն էի, — շա՛տ ալ մաղձոտ, սրտաբեկ ։

Այն օրերուն էր՝ երբ յիմար տենչերով,
Տարտամին մէջ անձիւթ երազ մը թեթեւ
Կը փնտռէի, կեանքս իսկ տալու հեշտ սիրով,
—Բոլորն ատոնց՝ դեռ չեն թըռած, միտքս են դեռ ։

Կեանքիս այդ յոյժ վտանգաւոր օրերուն
Օտար աղուոր կնկան մը որ, ո՛հ, մեռա՛ւ,
Տարօրինակ ազդեցութիւնն անանուն
Կըրած ըլլալ կը յիշեմ դեռ ես անձկաւ ։

Կրկին տարիքս ունէր անշուշտ, բայց աղուոր,
Ու թարմ էր շատ ու հեշտանաց կին մ'էր ան,
Որ սիրեց զիս մտերմութեամբ մ'անսովոր,
Իր տրտմութիւնն անձրեւելով իմ վըրան ։

*Ու շուտ մեռաւ ։ Առջի անգամն էր անկասկած*
*Կընկան համար ես կեանքիս մէջ կուլայի.*
*Բայց այդ անկեղծ արցունքներէն պարպըւած՝*
*Ինչո՞ւ արդեօք չը մընաց սիրտս ամայի ։*

*Ինծ Թըւեցաւ Թէ՝ ան կըրնար մայր ըլլալ*
*Ինծ պէս նիհար տըժգոյն հոգւոյ մ'երազոտ,*
*Ու մայրիկիս մահուան վըրայ դառնանալ*
*Թուեցաւ ինծ այն օրուան մէջ մշուշոտ ։*

*Անկից ի վեր՝ քանի՜ տարտամ տարիներ*
*Անցան ու ես ճանչցայ սէրն ալ բոցեղէն,*
*Հոգիս հիմա մըԹին կեանք մը չ'ստանձներ,*
*Սիրտս՝ ա՛լ չունի կակղուԹիւններ մոմեղէն ։*

*Այսօր՝ միայն անկարեկիր վերլուծող*
*Այդ երազի մեղամաղձոտ օրերուն,*
*Ես կը քննեմ այն անցեալը խուսափող*
*Անուրջի պէս վերնոտ, աստղի պէս հեռուն ։*

*Ու կեանքիս մէջ առջի անգամ տըղու պէս*
*Կրկին տարիքս ունեցող կինն այն տարտամ*
*Ո՛հ, իբրեւ մայր, կամ սիրուհի՞, իմ սըրտէս*
*Սիրած ըլլալս հիմա միայն ես կ'զգամ ։*

1896





## ԱՌԱՋԻՆ ՍԷՐ



Անբիծ, մաքուր ձիւնին վըրայ
Եթէ կայլակ մ'արիւն կաթի,
Ձիւնն անբասիր՝ կը սարսըռայ
Ճերմակութեան մէջ իր կաթի ։

Ու ծաղիկ մը, պատըղ կարմիր,
Կը ծըլի հոն, ճերմակին մէջ,
Վիրաւոր է ձիւնն անբասիր
Տաք ու խորունկ վէրքով մ'անշէջ ։

1902





## ԱՆԿԱՊ ԵՐԳԵՐ


լրակի կանանչ կողին
Խռնաւ թաւիշն՝ անկողին
Բիւր երազներուն
Գինով քերթողին :

Տըխուր հոգերն անցեալին,
Մաքուր երէկին, պզտիկ անցեալին
Մատաղ քերթողին՝
Բիւրաժըպիտ ապրիլին
Շունչէն կը հային :

Իրիկնամուտին,
Սեմին վըրայ վարդագոյն
Աղջամուղջին ու մութին,
Ցաւոտ միտքին մէջ հէզ բանաստեղծին՝
Վերջալոյսի ոսկեծին
Մըտածումներ, իբրեւ թիթռանց
Պար մ'առանձին
Կը յածի՜ն :

1897





## ԱՆԿԱՊ ՆԵՐԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ



Իրիկուն է.
Ինչ որ կայ մեղմ, եթերային, ինչ որ նուրբ,
Ինչ որ մշշոտ, երազոտ,
Ու կիսալոյս, ու կիսաստուեր, կիսահագագ,
Կիսաթափանց, կիսապղտոր, —
Այս վերջալոյսի դիւթական պահուն
Կը լեցուին աշխարհն իմ երազներուն ։

Բեկ բեկ ցոլքեր նըւաղուն,
Շողեր, բոյլեր բիւր ցրուուն,
Կը մաղուին վառ ամպերն ի վար,
Ու կարմիր, դեղին ու ծիրանեգոյն
Երանգներ նրբին,
— Կայծերն իմ հոգւոյն,
Իբրեւ լուսեղէն հողմահար մ'սփիւռ
Փափկօրէն սփռեր է գարնան զեփիւռ ։

Ամայութեան մէջ դաշտին
Զով, երազուն՜ լոյս ու լուռ,
Տարտամ բաղձանքներ, անծանօթ յոյզեր ներսս կը փթթին.
Մինչ պզտիկ հովուին անուշ սրընգին
Պարզուկ երգերուն խազերուն վըրայ
Իմ ելեւէջիկ ծփանուտ հոգին
Մե՛ղմ, կը թրթըռայ ։

Ու տարտամ երգերն ալ կը նըւաղին
Ջուարթ հօտաղին ։
Բոժոժիկի մը ղնթիւնն անուշիկ
Մթնոլորտին մէջ կ'երկննայ հեռուն,
Եւ զարնանաբոյր զով զեփիւռներուն
Կոծկոծեալ շունչէն կը թրթռայ յուշիկ ։

Բընութեան բոլոր հոյզերը թաքուն
Ներսըս կը տաքնան ու կը բըռընկին.
Մաքուր թաւիշէն իմ շըրթունքներուն
Ըղձոտ համբոյրներ կը թռչին օդին ։

Համբոյրները թեւ կ'առնեն, համբոյրները կը թռչին
Ինկած խորը ոչինչին,
Եւ կ'երթան ո՞ւր. —
Անպատրուակ մաքուր ձօն
Խօլ ու անկեղծ քերթողէն՝
Աղուորներու հասցէին. . . ։

1900



## ԳԵՐԱԳՈՅՆ ՏՕՆԸ



Երազուէտ խնկոտ առտուն ապաքէն
Զուարթ, կայտառ, կարմիր հարսի մը նման
Հորիզոնին կապ ամպերուն բացուածքէն
Կը ցրցքնէ ծպիտ մ'անծիր հիացման :

Ու կը թռչին ծզտին կայծերն անհամար,
— Կենդանութեան բազմաբողբոջ մասնիկներ,
Պտղաբերել թաքուն սերմերն անսպառ
Մայր բընութեան զգուշ գրկին մէջ անմեռ :

Ու Գարունը՝ ոսկեցընցող աւօտին
Տարփանքներուն մէջ կ'արթննայ ցնծութեամբ.
Լուռ գիշերուան երազներր կը ցնդին
Այգուն շքեղ վառ հանդէսին մէջ անամպ :

Ու տօնն անհուն երգի, բոյրի, հիացման,
Տօն բնութեան, շքեղ տօնը Արեւին,
Փթթումներու լայն գրկին մէջ անսահման
Կը թրթռայ կեանքով, յոյզով ցնծագին :

1902





## ՍԻՐՈՅ ԽՈՐԱՆ



րջազգեստի մը շրշիւնն հոտաւէտ
Խըռովքի անհուն սարսուռներ ունի ։
Կ՚այլայլի հոգին յուզման հակամէտ
Երբ քովէն յանկարծ կը թրթռայ անի ։

Լուռ, խորհրդապահ, ծփծըփուն թաղար՝
Որուն մէջ կինը կը ծաղկի մաքուր,
Եւ ուր՝ ապրելու խինդով դողահար
Կը փըթթին սիրոյ կիրքերն ու սարսուռ ։

Մաքուր մերկութեան մատուցարանին
Մետաքսէ փափուկ վարագոյր թեթեւ,
Տարտամ ուխտաւորք հոն կը վարանին,
Քու նըւիրական ծալքերուդ առջեւ ։

*Կը՜ն, — համադրութի՜ւնն իսկ մեծ աղուորին,*
*Անձուկ ու թեթեւ հաշիւներէ դուրս,*
*Անգոյն հոգիներն իսկ կը շլուարին*
*Սիրոյդ խնկումէն, — երկնային զմուռս ։*

*Ծրջազգեստի մը շրշիւնն հոտաւէտ՝*
*Խըռովքի անհուն սարսուռներ ունի ։*
*Կ՚այլայլի հոգին յուզման հակամէտ*
*Երբ քովէն յանկարծ կը թրթռայ անի ։*

1896





## ՆԱԻՐԻՆ ՀԵՏՔԸ



ելամաղձոտէն ձեռքըս ծնօտիս,
Կամուրջին վըրայ նստած առանձին,
Տարտամ հոգերով դեղուն ներսիդիս՝
Ու բիւր բաղձանքներն իմ կ'ալեկոծին,

Կը դիտեմ նաւին ընթացքը տենդոտ՝
Ծովի խաղաղիկ լանջքին վըրայէն,
Զոր ջերմ տարփանքով մեղմ, անուշահոտ
Հովերն իրիկուան լուռ կը փայփայեն։



Ու ջինջ մաքրութեան թոյլ ցոլքերուն մէջ՝
Երկու կապոյտներն իրար կը դիտեն.
Ամպիկի փերթ մը, — հուրի նրբամէջ —
Շեշտ վար կը նայի վերի կապոյտէն։

Նաւը կը ճեղքէ ջուրերը կապոյտ
Մէգ ու պանծալի գընացքով խաղաղ,
Ինչպէս կարապ մը պչրոտ ու անփոյթ՝
Կուրծքը լճակին — սնդուս միապաղաղ։

*Փրփուրէ ժանեակ՝ կապոյտի լանջքին՝*
*— Նաւին լայն հետքը կ'երկարի հեռուն,*
*Մինչեւ հոն ուրտեղ իրար կը հըպին*
*Լուրթ շրթներն երկու ջինջ անհուններուն։*

1900





## ԹՌՉՆԻԿԻՆ



ռչնի՛կ, ո՛վ Թռչնիկ, որ պատուհանիս
Մօտիկը կ'երգես նըւաղկոտ շունչով,
Ըսէ՛ր ինծի, արդեօք ի՞նչ ունիս,
Ինչո՞ւ տրտմութեան այդ վանկը թոթով։

Աշնան միգապատ սո՞ւգը կը սգաս,
Թէ ցուրտ ձմեռուան սարսուռները բիւր,
Չի կը թըւի թէ ցաւեր վաղահաս
Կուլաս քու երգիդ շեշտին մէջ անձնիւր։

Ու կը տեսնեմ քեզ, չոր ոստին վըրայ
Թառած մինակ ես հեռու սիրուածէն,
Աշնան հովերէն ոստը կ'երերայ
Եւ սառնեայ շունչեր քեզ կը հալածեն։

Եկո՛ւր, ո՛վ Թռչնիկ, բացուինք իրարու
Բարեկամի պէս, տաք, մըտերմաբար,
Դուն՝ մինակ, ես ալ՝ սիրուածէն հեռու,
Պատմենք ցաւերնիս, հասկնանք զիրար։

*Ու այս քերթուածը կախեմ թեւիկէդ,*
*Կը տանի՞ս անոր, ըսէ՛, ա՛յ թռչուն,*
*Թող գիրերովըս մխիթարուի գէթ*
*Մինչ գան ու անցնին մշուշն ու աշուն ։*

*Հոն, քերթուածին մէջ դրած եմ բոլոր*
*Իմ արցունքներէս ու իմ ցաւերէս,*
*Թռչնի՛կ, անոր տար զանի անմոլոր,*
*Ան պիտի ճանչնայ իմ ձեռագիրէս ։*





## ԲԱՆԱՍՏԵՂԾԻՆ ՎԻՇՏԸ



Զգալ երբեմն իր պարմանի կուրծքին տակ
Յուզմունքի մը կոհակներուն խօլ հանդէս,
Ու խանդավառ խընկահանգոյն շունչով տաք
Զայն չկրնա՛լ արտաշնչել բոցի պէս:

Զգալ առատ մակընթացումն զգացման,
Լանջքին խաղաղ փակարանին տակ յըռին,
Ու շրթներու տկարութիւնն անսահման՝
Դուրս թափելու բիւր տագնապներն իր ներքին:

Եւ զգալ թէ հատնում մը կայ ներսը լուռ,
Ամուլ, անյուշ, խլուող կեանքի խոր ցաւին,
Շրթանց վըրայ զգալ նիհար մի փրփուր
Ալիքներէն՝ որ ներսիդին կը յուզուին:

Ձեռներուն մէջ տեսնել քընարն՝ անզգած,
Ու թէ՝ մատներն հիւանդագին կը դողան,
Մէկ կողմ նետել ժանգոտ գըրիչն ալ յոգնած,
— Լո՛ւռ խոկալով կը տագնապի հէգ տըղան:

Չի ներշնչմանց աղբերակն է որ, աւա՛ղ,
Մերթ կը ցամքի յուսամոլոր քերթողին,
Ու կը թըւի թէ սեւ օր մ'է առեր պաղ
Կայծով, բոցով, կիրքով շաղուած իր հոգին:

Մուսաներու շընորհներէն մերժըւած,
Այնպէս՝ ինչպէս սիրականէն իր անգութ,
Քանի՛ անգամ, գիտէ՞ք, քերթողն է լացած
Իր աննըշան կեանքին վըրայ բազմասուտ:





## ԱՐԵՒՆ ՈՒ ՀԻՒԼԷՆ



ընջասենեակիս բաց պատուհանէն
Կը նազի նազով զեփիւռն առտուան,
Ու խօլ, երջանիկ երազներն իմ դեռ
Իբր արշալոյսի բոցեղէն թիթեռ
Կարծես կը հեւան
Բարձերուս վրան :

Ծիծղուն ու ծաւի չինչ հորիզոնէն
Ծայր կուսայ ծիրան ծընունդն արեւին,
Եւ արծաթաթել շող մը շըւարուն
Կուգայ լծորդել տարտամ պատկերներն
Իմ երազներուն :

Հոգիս, ծաղիկ խընկահոտ,
Նըրբացօղուն, ոսկեծըղօտ,
Կը բացուի
Ջերմ համբոյրէն արեւի
Հեռո՜ւն, լերան վերեւի,
Մինչ վարդենիք մ'անսահման
Կը հրդեհուի վառ կանըկոյն
Հորիզոնին օծանըման :

Ու կ'զգամ ոյժ մը, սարսուռ մը ներսէս
Մինչեւ արեւին հասնելու համար,
Հոն, արշալոյսին ճամբէն բոցագէս,
Ցօղերուն մէջէն մարգարտատխպար,
Ինչպէս ոսկեզօծ առասպելներու
Կարմիր, բոցահեր
Մանուկ մ'անվեհեր :

Ոտքերուս տակ՝ արեւն արու,
Գլխիս վերեւ՝ բոցեր, կայծեր հրաքեւ,
Աչքերուս մէջ՝ լոյսն արեւին ակներեւ.
Արե՛ւ, բարե՛ւ,
Ջերմ համբոյր տանք իրարու :

Դուն՝ իմ սիրածս եղիր, ես ալ քու գերին,
Քու մանկլաւիկն ըլլամ ու թող չըմարին
Կիրքն ու հրայրք մեր սիրավառ համբոյրին:
Որքա՛ն դու մեծ ես ու որքա՛ն անհուն,
Որքա՛ն ես պզտիկ, որքա՛ն ես փցուն,
Օ՛հ, գիրը նոյնն է մեր ճակատներուն :
Դուն՝ կեանքը կուտաս, կեանքը կը վառիս,
Ու ես՝ գրկիդ մէջ անմահ կը զգամ զիս:
Արե՛ւ, բոց բերնովդ ա՛ռ, համբուրէ՛ զիս :

Բանաստեղծութիւնն ես դու անսահման.
Ես ալ ծոցիդ մէջ լուռ ու աննըշան
Աշուղն երջանիկ.
Տո՛ւր ինծի կըրակդ ու տուր ինծի բոց,
Հոգիս թող վառուի հրդեհներովդ հոծ,
Քեզմով արբենամ, քեզ արտաշնչեմ :

Արե՛ւ, առ զիրկըդ, համբուրէ՛ հիւլէն.
Իսկ եթէ քու սէրն սպառէ զանի
— Ինչպէս թիթեռը մոմի լեզուակէն
Ձինջ իրիկուընով անուշ գարնայնի, —
Ի՛նչ փառք աննըշան հիւլէին համար
Դառնալ արեւին մի վառ կայծն իսպառ :





## ԳԻՇԵՐՈՒԱՆ ՄԷՋ



յս աղջամուղջին խոր գիշերուան մէջ
Միտքըս լուռ խոկմանց հրդեհներ ունի,
Հոն՝ վառ երազներ, խանդեր տխրունի,
Հոն՝ բոցէ կիրքեր կ՚առնեն ելեւէջ։

Արշալոյսներուն պայծառ ու զըւարթ
Ես նախազգացումն ունիմ ցընծագին,
Ու կ՚արթեցընեն իմ դալար հոգին՝
Ջինջ առտուներուն բընազդներն հըպարտ։

Գիշերն անհուն է. կ՚երկարի՜ լըռին,  
Այլ մեծ հրդեհին կիրքը չի մարիր,  
Ու ցարափոխիկ բոցն անկարեկիր  
Կ՚ուցէ, կը լափէ հոգին խաւարին։

1902





## ԻՐԻԿՈՒՆԸ



Իրիկունն է շատոնց մեռեր
Խաղաղին մէջ լուրթ լեռներուն,
Ու զիշերը հագած սեւեր
Կը սփռէ ցուրտն իր ձորձերուն :

Բոլոր ձայներն ալ մարեր են
Վերջալոյսի վարդերուն հետ,
Ու կը նըժայ լուռը վերէն,
Ու կը հալին գիծերն անհետ :

Դաշտին անծայր անկիւններէն
Լայն ստուերներ կ'ուրուագծուին,
Ու խորհուրդով, ու յամրօրէն
Կ'իյնան ցրուած բերանն հովին :

Ու հովն անուշ կը սարսըռայ
Ծառերուն մէջ քաղցրամրմունջ,
Ուր ոստերու ցանցին վրայ
Կը քնանան բոյներ անշշունչ :



Ու լուսընկան պայծառ, արթուն,
Իր մենութեան բարձրերէն լուռ
Վար կը մաղէ մեզի ժպտուն
Բիւր երազներն իր ոսկեհուռ :

Իրիկունն է հանդա՛րտ մեռեր
Դագաղին մէջ լուրթ լեռներուն,
Ու մութ գիշերն, հագած սեւեր՝
Կ'երկնէ կարմիր բոցերն այգուն :

1899





## ՉԵՄ ՄՈՌՑԱԾ



րբեմն ի զո՛ւր կը յուսամ
Այլ եւս մոռնալ զինքն յաւէտ.
Զզգալ սէրն իր բոցաւէտ
Երբեմն ի զուր կը յուսամ ։

Չի մոռացման մէջ իսկ լուռ՝
Հո՞ն է ոչինչ մ'աննըշան,
Սրտէս անդարձ, անբաժան,
Որ իրմէն ինձ կուտայ լուր ։

Բաժանումի խորշին մէջ
Խոր գիշերն է ծաւալուն,
Դեռ կայծ մը կայ պլպլուն,
Կայծ մը դալկոտ՝ այլ անշէջ ։

Ու մոռացման հեշտ պահուն,
Լուռ վայրկեան մը մտացիր,
Աստուպին պէս լուսածիր
Կ'ակօսէ ան մութն անհուն:

*Եւ կըրակին ցաւն է խոր,*
*Լըռին, անվերջ, անյեղլի․*
*Ու խոցերով սիրտս է լի,*
*Այս հրդեհին անսովոր ։*

1896





## ԾՈՎԻՆ ՎՐԱՅ



Մանեակներ են որ կը հիւսուին
Ու կը ցրուին ծովին վրայ,
Թոյլ փրփուրը կը սարսըռայ
Ցուրտ շունչին տակ մսկոտ հովին ։

Եւ ցոլքերու խուրձեր ի յոյզ
Հանդարտ խոկմանց այս լուռ պահուն
Ջըրի լանջքին վըրայ անհուն
Կ'այրին իբրեւ կայծերն հոգւոյս ։

Ու կը թռչին գիսախըռիւ
Ճաճանչումներն արեւմուտքին
Բազմակոհակ ծովի սրտին
Այդ հըրաթեւ իղձերն անթիւ ։

Հեռո՜ւն, ա՜յնտեղ, հորիզոնին
Տարտամութեան մէջ նըւաղկոտ,
Երազներուն իմ վարանոտ
Վառ հոյլերը կը բըռընկին ։

*Ու հոն է որ կ'առնէ հանգիստ*
*Անվերջ կարօտն իմ նայուածքիս,*
*Եւ ուր տենդոտ, խանդոտ հոգիս*
*Կը հանգչի հեշտ ու լռանիստ ։*

*Հո՛ն, կապոյտի այդ համբոյրին*
*Ջինջ մաքրութեան մէջ նըւաղուն*
*Ինծ կ'ուրուանայ աշխարհն անհուն*
*Երազներուս փայրավառին ։*





## ԽՈՐՀՐԴԱՄՈԼ...



որհրդամոլ ֆաքիր մ՚եմ ես անրջամոյն
Զոր հաշիշի կապոյտ ծուխը նուրբ եւ ուժգին
Կ՚առաջնորդէ ցնորքներու երկիրն անգին,
Աշխարհ մը լուռ, միայնութեան զուարթ ջերմոյն ։

Թմբիրը կայ փարանալից խորն իմ հոգւոյն
Երազներու երանաւէտ յուռ վայելքին,
Արբեցընող բուրմունքներու վըրդովագին
Խընկաւէտման յամրաթափանց Թոյնին հանգոյն ։

Ու սրբազան խնկամանի կըրակն ուժգին՝
Սեւեռումներն են ցանկափառ քու նայուածքին,
Ուր կը մըխայ հոգիս խըրեւ անուշ կնդրուկ ։

*Եւ կը մնամ Յունաւորման այդ անձնատուր,*
*Զոհ գիտակից պաշտամունքին այս չարաշուք*
*Աղքատին պէս ինքնամատոյց՝ ամփոփ ու լուռ ։*





## ՏԱՏԱՆՈՒՄՆԵՐ


Տրտմութիւններ անկարեկիր
Կը թափառին հոգւոյս վըրան,
Պզտիկ ցաւեր, սին, աննըշան
Կը փորեն սիրտս, — ամուլ երկիր :

Այլ աւերներն այս ցաւերուն,
Ինչպէս տերեւն աշնանահար,
Կը պարարեն սրտիս դալար
Կենդանութեան հուսկ ծիլն արթուն :

Եւ արգաւանդ հողէն յուշիկ
Ծիլ կ՚արձակեն բարմ կեանք, նոր սէր,
Որոնց համբոյր զըւարթաբեր
Կուտայ գարնան հովն անուշիկ :

Ու նոր կիրքեր զիս կ'արծարծեն
Սրտիս տալով նորոգ թեւեր.
Դէպի Արեւն ու դէպի վեր
Կը թռչիմ ես մահուան ծոցէն :





## ՃԾԾԻԻՆՆԵՐ



Աղջի՛կ, որուն սէրն ինձ կուտայ դանդաղ
Ու թոյլ մարուսքը վարդիւղի հոտին,
Թմբիրն երազոց աշխարհին խաղաղ
Ուրտեղ ոսկեզօծ իղձեր կը թռչտին,

Աղուո՛ր, այդ քոյրէն ես գինով եղայ,
Ու բաւական է բազմատենչ հոգւոյս
Վայելքն անուրջին՝ ուր պիտի մրխայ
Սրտիս մշտավառ խնկամանն անյոյս :

Աչքի կիսախուփ խոր զմայլանքով
Քեզի՛ կը դիտեմ տեսիլքին մէջէն,
Այս գինովութեան հեշտանքն հոգեքով
Թաղծութեան մէգը սըրտէս կը ջնջեն :

Ո՛հ, չարքըննայի՛ անուշ ու հանդարտ
Երազին ճերմակ այս փթթումներէն,
Հոգիս չը վառէ՛ր միսին մեղապարտ
Ամպարշտական կիրքովն ուժգնօրէն :

Ա՛ղջիկ, որուն սէրն ինծ կուտայ դանդաղ
Ու քոյլ մարուսքը վարդիւղի հոտին,
Թմբիրն երազոց աշխարհին խաղաղ՝
Ուրտեղ ոսկեզօծ իղձեր կը փթթին :

1895





## ԵՐԱԶԸ



Երազանքի մրրափէ մը ետքն, յանկարծ,
Անուրջներու բարձէն հազի՛ւ բաժնըւած,
Կ'զգամ հոգւոյս բուրաստանին մէջ — խօ՛լ խաղ —
Ծիլերն անգուԹ տրտմուԹեան մը գերազանց ։

Այլ զի երազն անբոյր ծաղիկ մ'է ուրին
Բացուած քունի լուռ անկիւնին մէջ խաղաղ,
Եւ յուզմունքն է հոտոտումի պատրանքին
Որ աչքերէս կը Թռցընէ քունն, աւա՛ղ ։

Եւ արԹնուԹիւնն հակառուԹն է երազի.
— Պատրողական, այլ խոր վայելք Թանկագին. —
Ու երբ անուրջն հիւծուի և կամ նըւաղի՝
Հագուած կը զգամ սուգով մ'անվերջ իմ հոգին ։

Կ'ուզեմ խըփել աչքըս, նորէն քընանալ
Այն աննըման քունն սփոփիչ և անուշ.
Թո՛ղ պատրանքը շարունակուի՛, հովերն ալ
Թո՛ղ օրօրեն զիս և զարԹնում քիչ մը ուշ ։

Այլ երազն իր վարդէ ոտնե՜րն հոտաւէտ
վեր առնելով իմ աչքերուս վըրայէն
Արշալոյսի հրեշտակներուն զուգահեռ
Թուսափեր է դէ՜պի երկինք յամրօրէն։





## ԴԱՑԿԵՐ ՄԸ



րիկունն անուշ հանդարտ է կարի,
Եւ հորիզոնին հրդեհն անսահման,
— Կապոյտ կամարին բոցէ խընկաման —,
Դալկոտ սպառմամբ ցակաւ կը մարի.

Իրիկնամուտին լուռն անրջաւէտ
Կ'անձրեւէ վերէն իր սարսուռն անդոյր,
Եւ երազներու հոյլ մը խընկաբոյր
Կը ծաղկի միսթիք ու փթթինաւէտ։

Նուրբ երանգներու մարմրուն ցոլքեր
Ամպերուն շոգի յատակին վըրան
Հասնումի անզգայ շունչով կը թրթռան,
Ու թեւեր կ'առնեն լայն կապոյտն ի վեր։

Անհուն խոկմունքի լուռ պահն է վըսեմ,
Անխօս պաշտամանց խորհուրդ սրտագին,
Լռութիւն շրթանց, ամփոփում մտքին, —
Աստղերն իրարու աղօթք լ՞նչ կ'ըսեն։

Աղջընակ մը, — կոյս Թարմութիւնն համակ —
Բլրակին վրայ կայնած զմայլուն,
Կը զրկէ յուշիկ իր նայուածքն հեռուն,
Տարտամութեան մէջ ամպերուն բամպակ։

Եւ ծաղիկներու փունջ մը ոզեւար,
Որուն քակուեր է խոտէ կապն, աւա՜ղ,
Հանգարտ անկումի շարժումով դանդաղ
Իր քընքուշ ձեռքէն կը Թափթփի վար։

Հէգ պարմանուհին տրտում է կարի՛,
Զի քայքայուեր է խուրձն իր յոյսերուն,
Եւ նայուածքն ի զուր կը ցրուի հեռուն
Վերջալոյսին մէջ ուր հոն կը մարի։





# ԱՆՑՈՐԴԸ

'անցնի անցորդն՝ անձնատուր
Իր տիրական խոհերուն,
Ճամբաներէ Թաքթաքուր,
Քայլամոլոր, շըւարուն ։

Մանգաղն ուսին՝ նա կը քալէ,
Մի՜շտ կը քալէ,
Ո՞ւրկից ի վեր . . .,
Ոչ ոք գիտէ ։

Գիտէ՞ք, սուր է գերանդին
Մտամոլոր անցորդին.
Գեղեցկութիւնն է անոր հունձքն իշխանական
Պալատին իր չորս դին ։

Կ'անցնի անցորդն ահա, տիկի՜ն,
Պատուհանին ներքեւէն՝
Ձեր փառաւոր ապարանքին ։
Ձեր իգական հըրապոյրներն անմեկին,
Ո՛վ տիկին,
Հասունութիւնն ունին փարթամ ու ոսկեզօծ
Յուլիսի բիւր պտուղներուն մուստ ու հոծ ։

Թողէք անցորդին մոլորուն
Քաղել քնքոյշ կարմիրն առոյգ
Այդ քաղցրահամ խնձորներուն —
Գանձեր զոյգ,
Ճնշել բուրմունքն ալ անուշ՝
Մեղրածորան նարինջներուն ։

Ձեր շնորհներն, ո՛վ տիկին,
Ցատկութիւններն ունին ճոխ ու թանկագին
Ջըրուտ ու զով ձմերուկին ։
Ձեր գեղն ամբողջ, ո՛վ տիկին,
Դեռ դրօշմը կը կրէ
Յօղաթուրմ ու խնկահոտ
Աստուծոյ մը մատիկին ։

Գեղեցկութեան մանգաղն՝ ուսին,
Գոգնոցին մէջ հունձքի պաշարն ալ առատ,
Կեանքի մոլար ճամբէն ուսին
Կ՚անցնի անցորդը բազմաշխատ ։

Անցորդը կ՚անցնի, անցորդը կ՚երթայ
Ձէք գիտեր թէ ո՛ւր,
Ածելով չորս դին
Վայրավատի՛ն
Գեղեցկութեանց հնձող իր սուր գերանդին ։





## ԹԱՓԱՌՈՒՄՆԵՐ



ժնէ ձըմեռուան սեւ սուգը ցրտին
Գարնան արեւէն, գարնան շունչէն խնկաւէտ
Ջինջ հոգիներէն ա՛լ եղաւ անհետ.
Ու ձիւներուն տեղ, փախան սարսուռին
Տրխուր ձըմեռուան՝
Մեր հոգիներուն վըրայ կը բացուին
Ծիլեր կենսունակ, վարդեր հոտեւան :
Ջերմ կեանքով մը՝ հողն է յըղի,
Ու հին երկրին ճնշերակը կը բղխի :
Բանաստեղծին ալ հոգին
Կը բողբոջի նոր յոյզերու մէջ անգին :

Ու հեռու քաղքի հագերէն ռամիկ,
Խաբող սէրերէն ու պաշտանքներէն,
Քերթողը մենիկ՝ իր անուրջներուն,
Իր խոհերուն հետ,
Կ'երթայ երազել պուրակին մօտիկ:





## ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ԵՐԱԽՏԻՔ



շուն մ'էր, աղու նայուածքդ երազուն
Զիս գերիդ ըրաւ, զիս հիւանդ ըրաւ.
Ամբողջ ձմեռ մը, ձըմեռ մը անհուն,
Սէրդ իմ սրտիս մէջ կրակ մը դրաւ ։

Ձըմեռն՝ ես արիւն-արցունք եմ լացեր.
Դուն ինծ թըւեցար մահուանըս ծաղիկ.
Փոխարէն՝ ինծի ձօնեցիր ինչե՛ր,
— Յաւիտեան սիրոյ խոստում, երաշխիք ։

Ձըմեռուան վերջն էր, հեռացար ինէ
Ինչպէս առտըուան մեղուն՝ վարդերէն ։
Սիրամերժ տղան ըսէ՛ք, ի՞նչ կ'ընէ,
Կը հասնի, կուլայ, կուլայ դառնօրէն ։

*Այս ցաւն ինծ համար սաստիկ էր, անհո՛ւն,*
*Վառելէ հասած՝ գուցէ մարէի.*
*Գարունն էր եկեր, ծաղկաւէտ գարուն,*
*Սրտիս պատուհանն արեւին բացի։*

*Ճաճանչ մը տաքուկ, շառայլ մը մոլոր*
*Կեանքիս կիսաշէջ մոմն էր արծարծեր,*
*Ճակտիս, այտերուս գոյնը դալկահար*
*Գարնան ծաղիկներն են կեանքով օծեր։*

*Ճնճղուկին երգը, կապոյտն երկինքին,*
*Մարմանդին վըրայ ծըլած անուրջներ,*
*Այն անգութ ցաւէն զիս բժշկեցին,*
*— Մայր Բընութիւնը զիս որդեգրեր էր։*

*Ազո՛ւր, հիմա ո՞ւր, դուն ո՞ւր ես հիմա.*
*Սիրավէպն ամբողջ կըրակի՞ն տըւիր.*
*Այլ ա՛յս քըմայքէն քեզ ի՞նչ կը մընայ.*
*— Միա՛յն սառուցիկ պտղունց մը մոխիր։*

*Մինչ այն տաղերը զոր ծօնեցի քեզ*
*Տրտմագին սիրոյ ցաւոտ օրերուն,*
*Անունս աշխարհքին սիրցուցին, գիտես.*
*Ընդունէ փոխան երախտիքս անհուն։*



# ՔԵՐԹՈՒԱԾՆԵՐՈՒ ՑԱՆԿ



